# ԽՐԻՄԵԱՆԻ ՎԵՐՋԻՆ ԿՈՆԴԱԿԸ

Անցեալ շաբաթ օր հրատարակեցինք Խրիմեան Հայրիկի մէկ կոնդակը՝ Ամերիկահայութեան ուղղուած, 1907 սեպտ. 20 թուակիր :

Վերջին խօսքը, վերջին մրմունջը թերեւս մեծ Հայրապետին, որ «հասեալ ի մուտս արեւու կենաց», հարկ դատեր է յորդոր կարդալու Ամերիկահայութեան, սիրով ու համերաշխութեամբ ապրելու :

Տխուր, ցաւագին կոնդակ մըն է Խրիմեանի հովուական թուղթը, որ կուգայ վկայելու, թէ 45 տարի առաջ Ամերիկահայութիւնը «եղբայրատեաց» պայքարի մէջ եղած է : Ուրեմն, 45 տարի առաջ ալ, դժտութիւնն ու ատելութիւնը այնքան խոր եղած են. պառակտումը այնքան լայն, հակամարտութեան աղմուկն ու աղաղակը այնքան բարձր, որ մինչեւ Էջմիածին հասեր են : Եւ Հայրիկը, « վշտալից հայրապետը տարաբախտ Ազգիս», հարկ դատեր է համերաշխութեան կոչ ուղղելու, սիրոյ ու եղբայրութեան յորդոր կարդալու ...

Այս տխուր, ցաւալի իրողութեան առջեւ, կը տարուինք հարցնելու թէ իրա՞ւ, ուրեմն, քէնն ու ատելութիւնը, մախանքն ու պառակտումը, մեզի հետ եղած են միշտ. իրա՞ւ հոգեկան պահանջ մը դարձած է պայքարը, ախտաւոր մղում մը՝ ամերիկահայութեան համար մասնաւորապէս, որ շուրջ կէս դար առաջ պառակտուած, եղբայր եղբօր դէմ պայքար մղած է. կուսակցութիւն կուսակցութեան դէմ պայքարած, իբրեւ թշնամիներ:

Անշուշտ, խօսքը գաղափարական պայքարի մասին չէ. ոչ ազգային կենսական հարցերուն լաւագոյն լուծում մը գտնելուն շուրջ: Լուծում գտնելու, գաղափարականի մը հասնելու համար բազմաթիւ ճամբաներ կան եւ փնտռտուքի մը շուրջ վէճը՝ արդար է, ու պայքարը՝ մարդկային, անհրաժեշտ նոյնիսկ: Խօսելի չէ երբեք նման պայքար մը: Չենք փնտռեր «մի հօտ մի հովիւ» օրերը. ոչ ալ կարելիութիւն կայ նման միատեսութեան մը: « Մէկ սիրտ մէկ հոգի»ի տեսութիւնը գեղեցիկ բացատրութիւն մըն է միայն, որ հեռու է իրականութենէն: Ներկայ ընկերային ու ազգային բարդ կեանքին մէջ, անկարելի է վիպային, ցնորական համերաշխութեան մը գաղափարը : Գաղափարը ինչպէս շատ մը գեղեցիկ գաղափարներ, պիտի ըլլան միշտ, բայց իրականութիւնը պիտի խուսափի: Նման համերաշխութիւն մը դուցէ երբեք ալ գոյութիւն ունեցած չէ եւ պիտի չունենայ ասկէ ետքն ալ :

Այդ մասին չէ մեր խօսքը: Մեր խօսքը՝ ազգային կենսական հարցերուն շուրջ ընդհանուր համախոհութեան մը մասին է: Ուժերու, ճգնումներու եւ աշխատանքներու համակեդրոնացումի մը մասին՝ ազգային գոյութեան շուրջ, որ վըտանգուած է :

Վտանգուեր է Հայրիկի օրերուն, ծերունի Հայրապետը մտատանջելու աստիճան :

— « Եւ զի՞նչ շահին այնպիսի եղբայրատեաց որտիք եւ գործովք եթէ ոչ կորուստ ըստ հոգւոյ եւ ըստ մարմնոյ, որով ոչ միայն վնասեն առժամապէս, այլ աւա՜ղ, միանգամայն ընդ միշտ վարկաբեկ լինին առաջի ազգաց քաղաքակրթելոց, եւ դառնեն ի վտանգս ազգի ազգի սպառնալեաց ապագային»:

Սիրելի ու միամիտ Հայրիկ, որ ապագայ վըտանգներու մասին կը խօսի :

Այժմ մենք այդ ապագան կ'ապրինք, հազիւ կէս դար անց, կ'ապրինք նախատեսուած վտանգներուն մէջ, որոնք կը պաշարեն ամերիկահայութիւնը: Կը պաշարեն հայ լեզուն, որ հազիւ կը խօսուի. հայ գրականութիւնն ու մշակոյթը, որոնք մոռցուելու վրայ են. հայ դպրոցը՝ ուր հայ ժողովուրդի ծաղիկները չեն ծաղկիր այլեւս, բազմութեամբ. հայ եկեղեցին՝ ուր քիչ են աղօթողները, եւ բաժան բաժան. իսկ եկեղեցականները՝ անհամերաշխ ու դժտութեան քարոզիչ. շատեր ալ՝ երկրպագու հեռաւոր սուրբերու ...

Ի՞նչ պիտի ըսէր Հայրիկը, եթէ մեր օրերուն ապրէր. ինչ պիտի զգար, եթէ յանկարծ, գլուխը վեր վերցնէր եւ տեսնէր այս օրուան պատկերը ամերիկահայութեան. պառակտուած՝ իր կեանքի բոլոր երեսներուն վրայ, բաժան բաժան եւ հակամարտ՝ ազգային բոլոր կենսական արժէքներուն, մինչեւ իսկ փրկութեան լաստերուն շուրջ: Հայրենիքին ու իր դատին ազատութեան ու իր ըմբռնումին շուրջ. հայ եկեղեցիին ու իր առաքելութեան շուրջ: Հայ ազգին ու իր գոյութեան շուրջ: Պիտի չուզէ՞ր փակել իր Հայու սրտայոյզ, քաղցր աչքերը, չտեսնելու համար տիրող այլանդակութիւնը: Պիտի չուզէ՞ր մարել իր գիտակցութիւնը, այնքան խոր ու ազգային, ի տես տիրող ազգային ահաւոր թմբիրին, ուր խրած կ'ապրի մէկ խոշոր մասը հայութեան :

Փոխեցէք թուականը եւ Հայրիկի կոնդակը կը պատշաճի մեր օրերուն, բառով ու ոգիով :

— « Ոհ, որդեակք իմ սիրեցեալք, սթափեցարուք ի թմրութեանց ձերոց եւ ի խոր քնոյ անգիտութեան եւ անհեռատեսութեան, եւ տեսէք, եթէ յորպիսում փափուկ ժամանակի գտանեմք »:

Պիտի սթափի՞նք. պիտի ըլլա՞ն սթափողներ, ի լուր մեծանուն Հայրենասէրի կոչին, պաղատագին հրաւէրին : «

Ինչ բարիք պիտի ըլլար մեր ժողովուրդին ու անոր գոյութեան համար, մանաւանդ այս « փափուկ ժամանակ»ին մէջ, եթէ ատելութեան ու պառակտումի սերմնացանները սթափէին. լսէին Խրիմեանի ձայնը Էջմիածնէն, աւելի հարազատ ու հայրական, աւելի անկեղծ ու ազատ :

Էջմիածինը իր բովանդակ սրբութեամբ ու դարաւոր շունչով Հայրիկին կոնդակին մէջն է, ոչ թէ այն թուղթերուն, որոնք Էջմիածնի անունը կը կրեն թէեւ, բայց զուրկ են, կողոպտուած են անոր ոգիէն :

Հայը այս ոգիով չէ՞ որ ապրած է սակայն:

(Խմբագրական ՀԱՅՐԵՆԻՔԻ)

## Ձմեռնային Ողիմպիականը Օսլոյի մէջ

(ՄԱՍՆԱՒՈՐ ԹՂԹԱԿՑՈՒԹԻՒՆ «ՅԱՌԱՋ»Ի)

ՕՍԼՕ.— Նորվեկիան տօնական օրեր կ'ապրի: Օսլօն իր 450.000 բնակչութեամբ դարձած է, մարզական աշխարհի կեդրոնը: Գրեթէ բոլոր երկիրներէն հաւաքուած է մարզասէրներու հսկայ բազմութիւն մը, դիտելու ձմեռնային Զ. Ողիմպիականի մցումները, իսկ անոնք որ բացակայ են, օրը օրին կը հետեւին անցուդարձին Radioներով կամ իրենց տեղական թերթերով :

Փետրուար 15ի առտուան ժամը 10ին Պիսլէթ Սթատիոնին մէջ տեղի ունեցաւ ողիմպիականի բացման արարողութիւնը: Յետոյ սկսան մրցումները: Սթատիոնի մինչեւ վերջին նստարանը գըրաւուած էր խուռներամ հանդիսականներու կողմէ, որոնք անհամբեր կը սպասէին բացման: Արքայական նուագախումբը զանազան քայլերգներ կը նուագէր զուարթ տրամադրութիւն մը ստեղծելով:

Եւ ահա յանկարծ սթատիոնէն ներս կը մըտնեն 30 ազգութիւններու պատկանող մարզիկները, իւրաքանչիւր ազգ առանձին խումբերու բաժնըւած իրենց գունագեղ տարազներով ու դրօշներով, եւ թափոր մը կը կազմեն: Պատկերը տպաւորիչ էր, եւ հանդիսականներու կողմէ բուռն եւ երկար ծափերու արժանացաւ :

Ապա ողիմպիականի կազմակերպիչ յանձնախումբի կողմէ բարի գալուստի մաղթանք մը ուղղուեցաւ բոլոր ներկաներուն եւ միաժամանակ խնդրուեցաւ յոտնկայս լռութիւն պահել ի յարգանս Անգլիոյ հանգուցեալ Ճորճ Թագաւորին : Ամէնքն ալ ոտքի ելան եւ պահ մը խոր լռութիւն տիրեց : Իշխանուհի Ռակնհիլտ, որու վիճակուած էր ողիմպիականի բացումը կատարել, հետեւեալ շատ կարճ ու պարզ խօսքերը արտասանեց .

— « Բացուած կը յայտարարեմ ձմեռնային Զ. ողիմպիականը»: Երկարատեւ ծափերու եւ ուրախութեան կանչերու հետ կը լսուին, թնդանօթի որոտումներ: Այս միջոցին խումբ մը մարզիկներ դէպի ողիմպիականի ջահը բարձրանալով վառեցին զայն: Ջահը կը բոցավառէր, դարաւոր խորհրդանշանը Ողիմպիականի: Ձմեռնային Զ. Ողիմպիականը բացուած էր : Ու մրցումները սկըսան :

Մարդկային պատմութեան մէջ առաջին անգամ է, որ Ողիմպիականի բացումը կին մը կը կատարէ: Ըստ նախապէս որոշուած ծրագրին՝ Նորվեկիոյ Թագաւորը՝ Հաքօն Է. պիտի կատարէր, բայց Լոնտոն գացած էր, Թագաւորին յուղարկաւորութեան մասնակցելու համար: Ուստի նոյն պաշտօնը կատարեց իր թոռնուհին իշխանուհի Ռակնհիլտ :

Ահաւասիկ Ողիմպիականի շքանշաններու ընդհանուր բաժանումը՝ ազգութիւններու կարգով.— Նորվեկիա 7 ոսկի շքանշան, 3 արծաթ շք., 6 պրօնզ շք., Հիւս Ամերիկա 4 ոսկի շք., 6 արծաթ շք., 1 պրօնզ շք., Ֆինլանտա 3 ոսկի շք., 4 արծաթ շք,, 2 պրօնզ շք., Աւստրիա 2 ոսկի շք., 4 արծաթ շք., 2 պրօնզ շք., Գերմանիա 3 ոսկի շք., 2 արծաթ շք., 2 պրօնզ շք., Հոլանտա 3 արծաթ շք., Իտալիա 1 ոսկի շք., 1 պրօնզ շք., Քանատա 1 ոսկի շք., 1 պրօնզ շք., Անգլիա 1 ոսկի շք., Շուէտ 3 պրօնզ շք., Զուիցերիա 2 պրօնզ շք., Ֆրանսա 1 պրօնզ շք., Հունգարիա 1 պրօնզ շք., Չեխոսլովաքիա 1 պրօնզ շքանշան :

### ՏՊԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ ՕՍԼՕՅԷՆ

Օսլօն թէեւ մայրաքաղաք մըն է, բայց յուսախաբութեան կը մատնուիք եթէ առաջին ակնարկով փորձէք զայն բաղդատել եւրոպական միւս մայրաքաղաքներու հետ, ինչպէս Փարիզ կամ Հռոմ որոնք իսկոյն կը ժպտին, կը յափշտակեն ձեզ իրենց հմայքով: Օսլօն ընդհակառակն մռայլ է, վերապահ: Սիրելու համար դուք պէտք է մօտենաք իրեն ու ջանաք խօսիլ, խօսեցնել զինքը: Եւ անգամ մը որ յաջողեցաք, ափսոսանքով կը մտածէք բաժնուելու մասին :

Թէեւ շաբաթէ մը ի վեր Օսլօ կը գտնուիմ, բայց նոր սկսած եմ հաղորդակցութեան մէջ մտնել հիւսիսային այս լռակեաց քաղաքին հետ :

Կ'անցնիմ պողոտաներէն, որոնք իրենց մաքրութեամբ կը գերազանցեն եւրոպական ուրիշ քաղաքներ: Ոչ մէկ մուրացկան կամ կասկածելի առեւտուրով զբաղած դատարկապորտ, որոնց յաճախ կարելի է հանդիպիլ ուրիշ երկիրներու մէջ : Հիացած կը մնամ արքայական պալատին, թատրոնին կամ զանազան պետական հոյակապ շէնքերու առջեւ: Պահ մը կը դիտեմ փողոցի անցորդները: Ընդհանրապէս բոլորն ալ երկարահասակ են, կայտառ դէմքով: Մուշտակէ հաստ վերարկուներու մէջ փաթթուած կը յառաջանան ինքնավստահ քայլերով :

Նորվեկիացիի համար հագուստը վայելչութենէ աւելի կը ծառայէ ինքզինքը պաշտպանելու իր ցուրտ կլիմային դէմ: Մանաւանդ կիները իրենց բուրդէ գուլպաներով, հաստ ու երկար կօշիկներով աւելի գիւղացիի տպաւորութիւն կը թողուն քան թէ քաղաքացիի: Բայց այս միայն արտաքին երեւոյթն է: Օսլօն սիրելու համար նախ պէտք է մօտէն ճանչնալ Նորվեկիացին որ վերջին ծայր կենսուրախ է, պարզամիտ, դիւրահաղորդ եւ հիւրասէր: Իրեն համար շատ բնական բան մըն է, երբ կարճ ծանօթութենէ մը յետոյ ձեզ իր տունը հրաւիրէ: Բայց այս հրաւէրը բոլորովին տարբեր է մեր կողմերու սովորական «մեզի ալ հըրամմեցէք»էն: Նորվեկիացիի տան յարկին տակ դուք ձեզ երբեք « հիւր » չէք զգար, այլ՝ ընտանիքի հարազատ մէկ անդամը :

Ողիմպիականի օրուան հերոսը կարելի է անուանել Նորվեկիացի Հյալմար Անտէրսընը որուն կուրծքը զարդարուեցաւ երեք ոսկի շքանշաններով հետեւեալ skiի վազքերուն համար. — 1500 մեթր, 5000, տասը հազար: Իր մուտքը մարզարանէն ներս բուռն ծափերով ողջունուեցաւ 30.000 հանդիսականներու կողմէ :

Գերմանիան պատերազմէն ի վեր առաջին անգամ ըլլալով կը մասնակցէր այդպիսի մրցումի մը: Պետութիւնը ամէն տեսակի օժանդակութիւն ցոյց տուած էր իր մարզիկներուն, որոնք ամիսներէ ի վեր նախապատրաստական փորձեր ըրած էին եւ իրենց լաւագոյն ուժերը գտած: Նոյնիսկ մարզական տարազներու ընտրութեան համար երկար խորհրդակցութիւններ եղան մասնագէտներու կողմէ, մինչեւ որ եզրակացութեան մը եկան:

Գերման մարզիկները մեծ ընդունելութեան արժանացան Օսլոյի մէջ :

Սահնակի երկու հոգիի մրցումին մէջ երկու Գերմանացիներ Օսթլէր եւ Հիպէր միասին առաջնութիւնը շահեցան: Այսպէսով Գերմանիան երկու ոսկի շքանշաններ ապահովեց : — Գերմանիա 2 : 42 — 40 ոսկի շքանշան .— Հիւս. Ամերիկա 2 : 40 — 15 արծաթ շք., — Զուիցերիա 2. 44—46 պրօնզ :

Skiով երկար վազքի կիներու մրցումը հետեւեալ արդիւնքը տուաւ.—

Անտի Լօրանս Հիւս. Ամերիկա 2: 06,8 ոսկի շք., Տակմա Ռօմ Աւստրիա 2: 09.0 արծաթ շք., Միրլ Պուխնէր Գերմանիա 2. 10.0 պրօնզ. :

(Մնացեալը յաջորդով)

ՄԱՔՍ ՊԱՐՈՆԵԱՆ

## Արուեստի ճամբով

Լուսանկարչութիւնը պարզ արհեստ մը ըլլալէ կը դադրի — երբ գեղարուեստագէտ մըն է զայն կիրարկողը — ու կը դառնայ մրցակից, կարգ մը նկարչական դպրոցներու :

Այսպիսի արուեստագէտ մը գիտէ, համադրել լոյսի եւ ստուերի խաբուսիկ խաղերը, կորզել ու տպաւորել՝ անկրկնելի արտայայտութիւններ, եւ ենթական պարտադրել իր ճաշակի եւ ըմբռնումի նուրբ եւ զգայուն ձեւերուն :

Այս հակիրճ տեսութիւնը կրնանք պատշաճեցնել, Պ. Երուանդ Արսլանեանի նոյնակերպ ու համբաւաւոր գործերուն (Foto Artistik, Պոլիս), որոնք պատուաւոր տեղ մը գրաւած են միջազգային ցուցահանդէսներու մէջ, նոյնքան կարճ ժամանակէն :

Այս համակրելի ու տաղանդաւոր արուեստագէտ — լուսանկարիչը՝ Շիշլիի Գարակէօզեանի նախկին շրջանաւարտ սաներէն է, եւ իր յաջողութիւնը կը պարտի որքան յամառ եւ յարատեւ աշխատանքին, նոյնքան ալ բնածին ընդունակութեան :

Իր գործերը առաջին անգամ իբրեւ գիտ՝ գնահատուած են H. Roussel Փարիզի գործատան կողմէ եւ յանձնարարուած Salon Nationalի տեսչութեան : Ահա թէ ինչպէս մեր երիտասարդ հայրենակիցը կրցած է մասնակցիլ 1950ի եւ 51ին Փա-

